1916 № 43.—Հոկտեմբերի 23 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.: Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.: Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտատաղեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պատի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



# Համաշխարհային պատերազմը

## ԼՈՒՐԵՐ

Ռումինիա. «Бирж. Вѣд. գրում է. «Մեծ հիմք կայ սպասելու, որ երկու կողմից էլ իրենց ուժերը կենտրոնացնում են Ռումինական գլխաւոր ճակատում։ Ներկայ համաեւրոպական պատերազմի ծանրութեան կենտրոնը հետզհետէ երեան է գալիս։ Բոլոր ճակատներում արդէն կառուցուած են զօրեղ պատնէշներ։

—

Օլթի գետի հովտում կռիւը շարունակւում է։ Ժիու գետի հովտում թշնամու հետապնդումը շարունակւում է։

—

Ռիգայի ճակատ.—Գերմանացիները աշխատում են ուշադրութիւնը հարաւային ճակատից հեռացնել և վախեցնել կեղծ յարձակումներով։ Վերջին յարձակման ժամանակ Ռիգայի դիրքերում գերմանացիք չկարողացան նոյն իսկ մօտենալ մեր ցանցապատնէշներին, ուր թողին անթիւ դիակներ։ Գերմանացիք, պաշտպանուած ծանր թնդանօթաձգութեամբ, յարձակւում էին փոքրիկ խմբերով, որոնց քշում էինք մեր հրացանների կրակով։

—

Կովկ. ճակատ.—Սաղկըից դէպի արեմուտք, Թաթար չայի հովտում, մեր զօրքերը յարձակւում գործելով թիւրքերի ամրացած բարձունքների վրայ՝ դուրս քշեցին դիրքերից, որոնք նահանջելով թողին 27 սպանուած։

—Բիւլժարի ուղղութեամբ ամբողջ օրը տեղի ունէր յամառ կռիւ հակառակորդի գերազանց ուժերի դէմ։ Մերոնք երեկոյեան դէմ քաշուեցին դէպի Բիակլի և Շիրին-բուլաղ։

—

Սոլունից հեռագրում են.—Վերջին կռիւներում բուլղարները կրեցին այնչափ կորուստներ, որ զօրքի մի քանի մասերը բոլորովին ոչնչացան։ 46-րդ գնդի մէջ, որի իւրաքանչիւր ջոկատ (рота) ունէր 280 սալդատ և 15 սպայ, մնացին միայն 93 զինուոր և 1 սպայ։ Գնդի հրամանատար Արաջեը, որը մեղադրւում էր գնդի կորստեան համար, փախուած է։ Կենդանի մնացող զինուորները ցոյց տուին իրենց անհնազանդութիւնը բացարձակ կերպով և թողնելով խրամատները, պահանջեցին ուղարկել իրենց տները։

—

Արեւմտեան ճակատ.—Ստօխօդ գետի մօտ, Վիտօնոժի շրջանում կռիւները շարունակւում են. Թշնամու առաջին գրոհները յետ մղուեցին, բայց թշնամին նորից գրոհ տուեց և տիրապետեց մեր առաջին խրամատներին։ Կարպատի ձիւնոտ լեռներում թշնամին յարձակուեց մեր գնդի վրայ և յետ մղեց, բայց պահեստի զօրամասը օգնութեան հասաւ և մենք կորցրած դիրքը նորից յետ վերցրինք։

—

Կովկասեան ճակատ.—Թօթաւխաչայի հովիտում մերոնք

յարձակուեցին տաճիկների վրայ և գրաւեցին նրանց ամրացրած դիրքը։ Տաճիկները թողեցին տեղում 27 սպանուած։ Բիդժարի ուղղութեամբ շարունակւում է կատաղի կռիւ. թշնամու ռազմական ոյժը զօրացանցում է. մերոնք յետ քաշուեցին Վիանլի և Շիրին-բուլաղ գիւղերը։

—

**Ռումինական ճակատ.**—Վերջին օրերս լուրջ կռիւներ տեղի չեն ունեցել։ Ժողովուրդի փախուստը դէպի Ռուսաստան թուլացել է։

—

**Արևելեան ճակատ.**—Պատերազմական մեծ գործողութիւններ չեն կատարուել վերջին շաբաթուայ ընթացքում շնորհիւ անընդհատ անձրևների։ Զօրքերի առաջ գոյացել է ցեխի ծով, այդ խանգարում է առաջխաղացման։

# Ներքին տեսութիւն

## ԿՈՎԿԱՍԵԱՆ ՃԱԿԱՏԻ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ԳՈՐԾԻ ԳԼԽԱՒՈՐ ԼԻԱԶՕՐ ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ԹԱՄԱՄՇԵԱՆԻ ԿՈՂՄԻՑ

Ռուսաստանի երկամեայ կռիւը Թիւրքիայի դէմ ռուսաց կառավարութեան կողմից միլիոնների ծախսեր պահանջեց՝ անհագին բազմութեամբ Ռուսաստանի սահմանները յորդած թիւրքահայ փախստականներին տեղաւորելու համար։ Այդ ծախքերը ցարդ հասել են գրեթէ 25,000,000 ռուբլու, և այս գումարը օր օրի վրայ աւելանում է այն չափով, որ չափով որ մեր զօրքերը մտնում են թիւրք տիրապետութեանց խորքը և փախստականների նոր զանգուածներ են մտնում ռուսաց սահմանները։

Ներկայումս Կովկասեան ճակատում խնամւում է պետական գանձարանի միջոցներով մօտ 200,000 միմիայն հայ, չհաշուած ուրիշ ազգութիւններին պատկանող փախստականները։ Ռուսաց կառավարութեան հոգացողութեամբ փախստականների համար, իրենց բնակեցրած տեղերում բացուած են սննդատու կայաններ, կենսամթերքների պահեստներ, հիւանդանոցներ, դպրոցներ երեխաների համար. բացի այդ փախստականներին տրւում են պարենաւորման և բնակարանային նպաստաբաժիններ, սպիտակեղէն է տաք հագուստ։ Իրենց տեղերը վերադարձող փախստականներին (առայժմ միայն Վանի շրջանի) կառավարական լայն օգնութիւն է ցոյց տրւում աւերուած տնտեսութիւնները վերականգնելու համար։ Այս նպատակով տրւում են նրանց փոխառութիւններ՝ դաշտերը սերմանելու, բանուոր-անասուններ, գիւղատնտեսական գործիքներ և այլն գնելու համար։

Բացի այդ՝ կառավարութիւնը պատերազմական գործողութիւններից այս կամ այն կերպ վնասուած նախկին թիւրքահպատակ հայ բանգէտներին օգնելու համար ներկայումս յատկացրել է յատուկ վարկ, 300,000 ռուբ. գումար, երկար-ժամանակեայ փոխառութիւններ տալու իրենց հայրենիքում մտաւոր աշխատանքով պարապող փախստական-հայերին։

## ԱԴԱՄԵԱՆԸ ԵՒ ՄԵՐ ԻՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

### (ՄԱՀՈՒԱՆ 25 ԱՄԵԱԿԻ ԱՌԹԻՒ)

Անգլիական ժողովրդի մեծագոյն հանճարի—Շէքսպիրի ստեղծագործութիւնները սրանից դեռ քառասուն տարի առաջ մուտք էին գտել հայկական աշխարհում։ Մարդկային իմացականութեան այդ ամենանուրբ և ամենախոր երկերը, որոնց մէջ հողածին մարդը պատկերանում է մեր առջև իւր հոգու բովանդակ գծերով, իւր բարձրաթռիչ թափառումներով, նենգութեամբ, վեհանձնութեամբ, խանդով ու գաղափարական մտորումներով…։

Երեք հարիւր տարի առաջուայ ծնունդ եղող այդ մեծ արուեստագէտը յղացրել ու նախատեսել է այն խորութիւնը, որ մարդ-սփինքսն է պարփակում իւր էութեան մէջ. յղացել է իր ժամանակուայ ըմբռնումներից բոլորին անկախ, յղացել է ապագայի մշուշոտ ու ամպամած հորիզոնների մէջ թափանցող իր մտքի սրատեսութեամբ։

Եւ այն խորհուրդներն ու ապրումները, որոնք գոյութիւն ունին Շէքսպիրի երկերում, ոչ անցեալին ու ոչ էլ ներկային են պատկանում, այլ պատկանում են միմիայն ապագային. և թերևս դարեր սահին իրար ետևից, ժամանակն ու հասկացողութիւնները փոխուին, բայց նրանք կրկին պիտի մնան ապագայի սեփականութիւն… Որովհետև դեռ շատ հեռու է այն հասարակութիւնը, մարդկային զանգուածի այն ձևադասութիւնը, որ ատակ լինի մի անգամ ևս արտադրել այդպիսի մի հանճար…։

Իսկ եթէ նրա հանճարի զօրութիւնը անցեալի ու ներկայի հասարակական ու քաղաքակրթական զարգացման աստիճանին չի համապատասխանում, բայց նրա ստեղծագործած տիպերի հոգեբանութիւնը գոյութիւն ունեցել է և ունի միշտ։ Նրանք այսօր նոյն են իրենց ըմբռնումներով ու նկարագրի բոլոր արտայայտութիւններով, նրանք գործում են մեր շուրջը, մէկը՝ իւր Համլէթական ձգտումներով ու իմաստասիրութեամբ, միւսը՝ Եագոյի խորամանկութեամբ, երրորդը՝ Օթէլլոյի խանդածութեամբ ու կրքով…։

Նրանք գոյութիւն ունին հասարակական ամեն ասպարէզների վրայ և պիտի գոյութիւն ունենան այնքան ժամանակ, որքան ժամանակ որ մարդկային բնութեան մէջ ապրին բոլոր այդ զգացումներն ու յուզումները։

Շէքսպիրի երկերը հարազատօրէն բեմադրելու համար՝ նոյնքան հզօր անհատականութեանց կարիք կայ. արուեստագէտներն, որոնք կարողանան լիովին ըմբռնել այդ թատրերկների էութիւնը, և կարողանան ապրեցնել ու կենդանութիւն տալ նրանց բեմի վրայ։ Երկար ժամանակ Շէքսպիրը անմատչելի էր մնացել հայ բեմին, որովհետև հայերս շատ ուշ ունեցանք այն միակ մարդը, որ կարողացաւ Շէքսպիրը ծանօթացնել արևելքի աշխարհին։

Այդ մարդը Պ. Ադամեանն էր՝ լայն ճակատով, նիհար մի երիտասարդ, որ զինուած էր բրիտանական հզօր արուեստագէտի երկերն ըմբռնելու և ներկայացնելու հազուագիւտ կարողութեամբ։

Այն հարազատ կեանքը, որ նա գնում էր իւր դժուարին դերերում, այն հրային ու վեհ շունչը, որով ապրեցնում ու բոցավառում էր հասարակութեան գիտակցութիւնը, Ադամեանին յատուկ կարող էին լինել միայն։

Եւ հայ ժողովուրդը, հայ գաղափարական մտաւորականութիւնը, չնայած իր հրող և սառն վերաբերմունքին՝ հանդէպ հայ թատրոնի այդ հզօր ներկայացուցչին, մեծ բան է պարտական այդ մեծ մարդուն հայկական արուեստի զարգացման տեսակէտից։ Մեծ բան, որի արժէքը դժբաղդաբար այժմ է որ գիտակցում ենք և մեր գնահատութեան չափը որոշում։ Այդ բնական է, որովհետև այն ժամանակ երբ Ադամեանը ապրում ու գործում էր մեր մէջ, այնքան բարձր ու անմատչելի էր մեր հասարակական կեանքին ու հոգեբանութեան, որքան Շէքսպիրը իր ժամանակուայ կեանքին ու ըմբռնումներին։ Եւ ինչպէս որ Անգլիական այդ մեծ մարդուն դարեր յետոյ կարողացան գնահատել, մենք էլ ահա կէս դար յետոյ է, որ մեր ազգի ամենից հոյակապ ու հուժգու արուեստագէտներից մէկին գնահատում ու հասկանում ենք։

Այո, մենք ժամանակին գնահատել ու բարձրացնել չգիտենք մեր ժողովրդի իրական արժէքները. մենք այնքա՜ն ողորմելի ու

խղճուկ ենք, մեր ազգի հոգեկան ույժերի հանդէպ ունեցած մեր պարտականութեան գիտակցութեամբ, այնքան սնամէջ այդ ույժերն ու զօրութիւններն առաջ քաշելու ու զարգացնելու գործնական կենսահայեցողութեամբ...։

Ո՞վ ասաց թէ հայ ժողովուրդը հանճար չի արտադրել, թէ մեր ցեղի երակների միջով չի հոսել բնաւ մտքի ու արուեստի այն բարձրագոյն կայծը, տիեզերական ազնուական արիւնը։ Ո՞վ ասաց թէ հայ ազգը, որպէս ասիացի փոքրածաւալ ու հնացած ժողովուրդ՝ չի կարող ստեղծագործել հանճարի այն թափը, որ յատուկ է միայն եւրոպական մեծ ազգերին...։

Այդպիսի այլանդակ ու տխմար համոզում ունեցող մէկը, կամ օտարացած է իր մայրենի լեզուից ու գրականութիւնից (որոնք մեծ բազմութիւն են կազմում Կովկասում) և կամ գիտակցաբար ժխտում են հայ ժողովրդի արուեստի ու մտքի յատկութիւնները, տարուելով օտար և միջազգային ինչ-որ օդային ու անբովանդակ ցնորքներով։

Հայոց գրականութիւնն ու արուեստը ունեցել են իրենց հզօրագոյն ներկայացուցիչները յանձինս Նարեկացու, Շնորհալու, Այվազովսկու, Աղամեանի, որոնք նոյնքան տիեզերական ու համաշխարհային են եղել իրենց յղացումներով ու ձգտումներով, որքան օտար հանճարները։ Իսկ թէ ինչու նրանք նոյն անունն ու փառքը չեն ստեղծել իրենց շուրջը Եւրոպական հանճարների նման, այդ պէտք է վերագրել մեր թերութեան ու մեր արժէքներն հարազատօրէն ըմբռնելու և բարձրացնելու ըմբռնողութեան պակասութեան...։

Հայ ազգը ունեցել է իր հանճարները, նոյնքան հզօր ու բեղմնաւոր. բայց դժբաղդաբար նա չի կարողացել ժամանակին գնահատել ըստ արժանւոյն։

Եւ քանի՜-քանի՜ նորափթիթ և խոստմնալից տաղանդներ մեր անուշադրութեան և անփութութեան պատճառով անհետ կորչում են և մենք շատ ուշ է, որ զգում ու դատափետում ենք մեր սխալը։

Ծ. Թորգոմեան

## ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԻՆ ՆՊԱՍՏ ԲԱՇԽԵԼՈՒ ԽՆԴԻՐԸ

Հ. Կենտրոնական Կոմիտէի նախագահ պ. Ս. Յարութիւնեանը՝ ի նկատի ունենալով գաղթականների նպաստների անկանոն բաշխման մասին բողոքները և անձամբ ստուգելով այդ բողոքների իրաւացի լինելը, այս հոկտեմբերի 18-ին դիմեց գաղթականական գործերի գլխաւոր լիազօր գեներալ Վ. Մ. Թամամշեանին հետեւեալ գրութեամբ.

«Գաղթականներին նպաստները չեն բաժանւում ժամանակին և բաշխման ձեւն էլ շատ անբաւարար է։ Շատ անգամ անցնում են ամիսներ, բայց նահանգական Կոմիտէից չեն ստացւում նպաստները, իսկ նպաստի գումարները ստանալու ժամանակ նահանգական Կոմիտէի և գաւառական վարչութիւնների մէջ տեղի են ունենում գրագրութիւն, որի պատճառով շատ ժամանակ է կորչում և գործը ձգձգւում։ Այնուհետև գումարները յանձնւում են տեղական պրիստաւներին և սկսւում է նոր գրագրութիւն պրիստաւների և գիւղական տանուտէրերի միջև, որից յետոյ միայն բաժանւում է նպաստը տեղի գիւղական մասնաժողովներին, որոնց անդամները ընտրուած են լինում ոստիկանական պրիստաւներից. այդ մասնաժողովների անդամների մեծ մասը լինում են այնպիսի տարրերից, որոնք սրտացաւ վերաբերմունք չեն կարող ունենալ դէպի փախստականները։

Մասնաժողովներին նպաստները յանձնելու համար պրիստաւները սովորաբար հրաւիրում են իրենց պաշտօնավայրը և մասնաժողովի անդամները չստանալով ճանապարհածախք և զուր ժամանակ վատնելով՝ տրտնջում են և շատ անգամ կամ ուշանում են և կամ բոլորովին չեն գնում նպաստները ստանալու։

Կան տեղեր, ուր մասնաժողովի անդամները անգրագէտ լինելով՝ գրագրութեան համար վարձ են վճարում իրենց իսկ սեփականութիւնից, որը առիթ է լինում նոր դժգոհութեանց։

Այդ բոլոր անյարմարութիւնները շատ հեշտ կարելի է վերացնել, եթէ յարմար համարուի նպաստի բաշխման գործը յանձնելու տեղական կազմակերպութիւններին, ինչպէս այդ կատարւում է ներկայումս Երեւանի նահանգում՝ Եղբայրական Օգնութեան յանձնաժողովի միջոցով։

Մնում է այդ ձեւով գործը տանել և Գանձակի ու Կարսի շրջաններում։

Այս երկու շրջաններում Կ. Հ. Բ. Ընկերութիւնն ունի ամեն վայրերում ճիւղեր, ուր բնակեցրած են փախստականները։ Վարչութեան անդամներն ընտրուածներ են և գտնւում են տեղական ընդհանուր ժողովների անդամների, վերստուգիչ յանձնաժողովների և Ընկ. Կենտրոնական Խորհրդի վերահսկողութեան ներքոյ, որ նշան է թէ՝ այդ անդամները հասարակութեան կողմից վստահելի անձնաւորութիւններ են՝ գտնուելով հանդերձ մի հիմնարկութեան վերահսկողութեան ներքոյ։

Բացի այդ Կ. Հ. Բ. Ընկերութիւնն ունի և այն առաւելութիւնը, որ փախստականների համար յատկացրած պետական պահեստները հաւատացած են այդ Ընկերութեանը և նա ունի արդէն որոշ ծառայողների կազմ և առանձին լիազօրներ, որոնք շրջում են փախստականների վայրերում օգնութիւն հասցնելու նոցա և վերաքննելու պահեստները։

## ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐԻ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԵՐԵԿՈՅԹԸ

Հոկտ. 14-ին Երաժշտական դպրոցի դահլիճում կայացաւ Հայ Գրողների Ընկերութեան երկրորդ երեկոյթը, ուր դասախօսեց պ. Մ. Աբեղեանը՝ նիւթ առնելով «Հայոց հին բանաստեղծութիւնը»։

Ըստ դասախօսի մեր հին բանաստեղծութիւնը ճիշտ գնահատելու համար, պիտի նկատի ունենալ նոր ազգերի հին բանաստեղծութիւնն, որովհետև հայերն էլ նոր ազգերին են պատկանում։ Հայ ազգը մի խառնուրդ է կազմում արևմտեան ու արևելեան ժողովուրդների և օտար ցեղերից կրած իր ազդեցութիւնները կարևոր նշանակութիւն են ունեցել մեր գրականութեան վրայ։

Ըստ դասախօսի մեր ազգային բանաստեղծութիւնը սկսւում է 2-րդ դարում Ք. Ա., երբ Արտաշիսեան և ապա Արշակունեաց հարստութիւնների ժամանակ հայ ժողովուրդն սկսում է ապրել մի իսկական դիւցազնական շրջան և առաջ են գալիս բազմաթիւ գրոյցներ և երգեր Արտաշէսների, Արտաւազդների, Մեծն Տիգրանի և այլոց մասին։ Այս բանաստեղծութիւնը կապուած լինելով ազգի պատմական կեանքի հետ՝ նրա զգացմունքն ու գաղափարներն է պատկերացրել իր մէջ։ Աւելի առաջ եղած գրոյցները և առասպելները, որոնցից շատ քիչ բան է մնացել, աւելի դիցաբանական և ընդհանուր բնաւորութիւն ունին։ Այդ բոլոր վիպական տարրերը յետագայում միանալով կազմում են երկու մեծ վիպական շրջան, իբրև մեր նախնական ազնուական բանաստեղծութիւնը, որ առանձին երգիչների ձեռքով մշակուել է որոշ արուեստով։

Բացի վիպական բանաստեղծութիւնից՝ նախագրական շըրջանում եղել է նաև քնարական բանաստեղծութիւն, երկու գըլխաւոր տեսակներով, որ են՝ ուրախութեան երգեր և լալեաց բանաստեղծութիւն (յուղարկաւորութեան ողբեր)։ Նուագարաններն էին փող, վին և փանդիռն։

## ՔԻՒՐԴԵՐՆ ԱՆՁՆԱՑՈՒՐ

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

*Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է մեծ. պ. Գասպար Իվ. Տէր Մարգարեանից իւր անունով պահուող Շրվինանց դպրոցի ներկայ տարուայ առաջին կիսամեակի նպաստը 1,550 ռ.։*

*—Շնորհակալութեամբ ստացուել է յօգուտ Ախալգորու դպրոցի բժ. Մ. Մզարէուլեանից 100 ռ. և անյայտ անձից 100 ռ., ընդամենը 200 ռ.։*

***

*Գանձակի գաղթականական գործերի լիազօր պ. Ա. Բօրեանի յայտարարութեան համաձայն՝ Խորհուրդս որոշեց ուղարկել Գանձակի վիճակում բացուած տասը գաղթականական դպրոցներին մի-մի օրինակ «Համբաւաբեր» շաբաթաթերթը։ Բացուած են դպրոցներ՝ Գանձակում, որ ունի 120 աշակ. և 6 ուսուցիչ. Փիրում՝ 35 աշակ. 2 ուս., Բանանցում՝ 35 աշակ. 2 ուս., Ոսկանապատում՝ 30 աշակ. 1 ուսչ., Բարսումում՝ 32 աշակ. 1 ուս., Գետաշէնում՝ 45 աշակ. 1 ուս., Զարդախլուում՝ 35 աշակ. 1 ուս., Ղարաչինարում՝ 42 աշակ. 1 ուս., Ներքին-Շէնում՝ 30 աշակ. 1 ուս. և Էրքէջում՝ 30 աշակ. 1 ուս., ընդամենը 392 աշ. և 17 ուսուցիչ։*

***

*ՔԱՐՈՒԱՆՍԱՐԱ, 13 հոկտ.*

*Կ. Հ. Բ. Ընկերութեան տեղիս Վարչութիւնը շնորհակալութեամբ ստացաւ պ. Ան. Պապեանից հարիւր ռուբլի և 22 հատ գիրք իւր որդու յիշատակի համար։ Այդ առթիւ Վարչութիւնս յայտնում իւր շնորհակալութիւնը։*

*Նախ. Վարչ. Մ. քահ. Էզիլեան*

***

*Կ. Հ. Բ. Ընկերութիւնը տ. Օլգա Իվանովնա Վարդ-Պատրիկեանից շնորհակալութեամբ ստացաւ 10 ռուբլի յօգուտ ճաշարաններին։*

***

*Հ. Կ. Կոմիտէն Մանչէսթըրի Կարմիր Խաչի Կոմիտէի միջոցով ստացաւ մի վագոն շոր գաղթականների համար։*

---

# Ք ր ո ն ի կ ո ն

*Թիֆլիսի քաղաքային ծառայողների փոխատու-խնայողական ընկ. հրատարակած հաշուետուութիւնից երևում է, որ անցեալ տարի ունեցել է 378,006 ռ. 53 կ. շրջանառութիւն, իսկ զուտ արդիւնք՝ 4,665 ռ. 17 կ.։*

***

*Կ. Հ. Բ. Ընկերութեան Նուխուայ ճիւղը որոշել է հայոց թաղում բանալ գրադարան-ընթերցարան։ Թոյլտուութիւն ստանալու համար դիմում է եղել պատշաճաւոր իշխանութեան։*

***

*Ինչպէս յայտնի է, հանգուցեալ իշխանուհի Ն. Ա. Բէկթաբէկեան իր կտակով քաղաքին է նուիրել հողեր և կալուածքներ։ Նրա կտակակատարները և քաղաքային մի յատուկ յանձնաժողով մեկնում են Կուբանի շրջանի Բաթալբաշինսկ մասը, գնահատելու հանգուցեալի՝ քաղաքին կտակած 1000 դեսեատին կալուածքը։ Ենթադրում են, թէ այդ կալուածքը կարժենայ մօտաւորապէս մի միլիոն ռուբլի։*

***

*Վրաց էկզարխութեան կոմիտէն, որ գործում է էկզարխ Պլատոն արքեպիսկոպոսի նախագահութեամբ, որոշել է Թիֆլիսում բանալ մի մեծ որբանոց՝ զինուոր գնացածների երեխաներին խնամելու համար։*

***

*Լոյս է տեսել Յով. Գիւլխանդանեանի հրատարակած հայերէն ձեռագիր շարժական այբուբենը, գ. 30 կոպ.։*

***

*Թիֆլիսում Անդրկովկասի երկաթուղիների վարչութեան կից ամսիս 15-ից բացուել են դասընթացքներ, որտեղ իւրաքանչիւր երեք ամսուայ ընթացքում պատրաստուելու են երկաթուղային կայարանապետների օգնականներ։*

***

*Թաւրիզում կազմակերպուել է հայ կուլտուրական միութիւն, որի նպատակն է պարսկահայերի մէջ կուլտուրա և գիտութիւններ տարածել։*

***

*Օգոստոս ամսում տրամւայը մուտք ունեցել է 208,226 ռ. 46 կ., իսկ անցեալ տարի նոյն ամսին եղել է 172,593 ռ. 04 կ.։ Եթէ ի նկատի առնենք որ այս տարուայ վագոնների թիւը անցեալ տարի եղածից չի աւելացել, այլ ընդհակառակը պակասել է, ուրեմն էլէքտրաքարշը այս տարի աւելի օգուտ է տուել քան անցեալ տարի, հետևապէս բոլորին անտեղի է տոմսակների գները աւելացնելը։*

***

*Համաձայն նախարարների խորհրդի որոշման և Կովկասի Փոխարքայի կարգադրութեան՝ պետական գանձարանից 300,000 ռ. է յատկացուած օժանդակութիւն տալու Թրքահայ երկրագործներին, վաճառականներին և արհեստաւորներին։*

***

*Երկրաչափական դպրոցների աշակերտներին թոյլատրուած է մտնել բոլոր այն բարձր կրթական հաստատութիւնները, որոնք գտնւում են երկրագործութեան նախարարութեան հայեցողութեան ներքոյ։*

* * *

*Վրաց Բարեգ. Ընկերութիւնը Սագարեջօ գիւղում բացել է մետաքսագործութեան արհեստանոց, ուր բացի աշակերտներից սովորելու են նաև գիւղացի կանայք։*

* * *

*Ի յիշատակ հանգուցեալ իշխան Ս. Ս. Աբամելէք-Լազարեանի՝ նրա քոյրը Կիսլովոդսկում կառուցանում է մի հոյակապ տաճար։*

* * *

*Նորերս վախճանուած իշխան Ս. Ս. Աբամելիք-Լազարեանի ժառանգութեան անդրանկութեան իրաւունքը (մայորատ) և Լազարեան ճեմարանի հոգաբարձութիւնն անցնում է հանգուցեալի ազգական՝ երիտասարդ սպայ իշխ. Մեշչերսկուն։*

* * *

*Ամսիս 20-ից Թիֆլիսի կրուժոկի ամառային շէնքում բացուելու է «Կովկասեան թռչնաբուծութիւն սիրող ընկերութեան» ձեռներէցութեամբ թռչունների ցուցահանդէս։*

* * *

*Բուժայխում երևացել է խոլերայ հիւանդութիւնը։ Ամսիս 14-ին խոլերայով հիւանդացել են 3 հոգի։*

* * *

*Մտադրութիւն կայ Նուխում բանալու արհեստաւորաց դպրոց. այդ առթիւ Կովկասի ուսումնական շրջանի հոգաբարձու Ն. Ֆ. Ռուդոլֆը մեկնեց այնտեղ։*

* * *

*Վաղը, երկուշաբթի՝ հոկտեմբերի 24-ին, Արտիստիկ թատրոնում, Հայց Դրամատիկ Ընկերութեան խումբը տալիս է իր չորրորդ հերթական ներկայացումը։ Խաղալու են Սամարինի յայտնի պատմական թատերգ «Յօ Երթաս»-ը։ Ենիկէի դերը կատարելու համար յատկապէս հրաւիրուած է ռուս բեմի հայ դերասանուհի Իզաբէլլա Բալանթար։ Խմբի դերացոյց (ռեժիսոր) Սևումեանը կատարելու է Պետրոնիուսի դերը, իսկ Վ. Փափազեանը՝ Մարկուսինը։ Մասնակցում է ամբողջ խումբը։*

* * *

*Վրաց «Զուէնի Մեգոբարի» թերթը յայտնում է, որ Պետրոգրադի արևելեան մասնաճիւղի (ֆակուլտետի) ուսուցչապետները հայ-վրացական ամբիոնի համար միաձայն ուսուցչապետ են ընտրել պ. Ն. Ադոնցին։*

* * *

*Պետրոգրադի մանկավարժական ճեմարանի խորհուրդը ուսուցչապետ Վարդան Վարդանեանին ընտրել է կառավարիչ բժիշկներ պատրաստելու բաժանմունքի համար.*

* * *

*Թիֆլիսում բացուել է շոֆերներ պատրաստող դասընթացներ։*

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ՍԱՍՈՒՆՑԻՆԵՐՈՒ ԳՈՅԱՄԱՐՏԸ ԹՇՆԱՄՈՒ ԵՒ ԲՆՈՒԹԵԱՆ ԴԷՄ.

### 1915 ՅՈՒԼԻՍ 21-ԷՆ—1916 ՓԵՏՐ. 15.

*1915-ի յուլիսի երկրորդ կէսին սասունցիներու դիմադրական թափը կոտրուեց։ Նրանք իրանց տրամադրութեան տակ եղած բոլոր միջոցները սպառելուց և ամեն հնարաւոր ու անհնար ջանքերը թափելուց յետոյ տեղի տուին թշնամու գերազանց ուժերուն, որոնք տիրեցին Սասնոյ սրտին—Անտոքին—յուլիսի 21-ին։*

*Սասունցին իր երկար փորձառութեամբ շատ լաւ ճանչցած էր իր թշնամիները, որոնք կատաղի և անխնայ են դառնում այն ատեն, երբ հակառակորդը ընկճուած է և զրկուած ինքնապաշտպանութենէն։*

*Սասունցին լսած էր Ախլաթի, Բուլանուխի, Խնուսի և Դիարբեքիր-Համիդի կոտորածներու մանրամասնութիւնները, տեսած էր Մշոյ և Տարօնոյ բնակիչների բնաջնջումը, ինքը երեք ամիս շարունակ զէնք էր գործածել, երեք ամիս շարունակ զոհեր էր խլած թշնամու շարքերից. այսքան բան տեսնելուց, լսելուց և ընելէ յետոյ դժուար թէ մտածէր զինաթափութեան և յանձնառութեան մասին։ Ուրիշ հանգամանք ևս կար, որ թոյլ չէր տայ սասունցիներուն մտածելու զինաթափութեան մասին. այդ լեռնականին յատուկ այն բարձր ու վեհանձն հոգին է, այն վեհ ու վսեմ զգացումն է, որով օժտուած էր սասունցին։*

*Ինչպէս ըսի թշնամին տիրած էր Սասնոյ սրտին և գոռոզաբար թափահարում էր սուրը աջ և ձախ։ Սասունցին տեսաւ, որ այլևս անհնար է հաւաքական դիմադրութիւն ցոյց տալ. տեսաւ, որ անկարելի է ընտանիքներով—տասնեակ հազարներով կտրել անցնել Ռուսական բանակը, չկարողացաւ նաև համաձայնել ընտանիքը թողնելու մտքին, ուզեց իր ընտանիքի հետ ապրել և ընտանիքի հետ մեռնիլ։*

*Յուլիսի 21-ից յետոյ թողուցին Անտոքը և ցրիւ եկան. Տալուորիկցիները անցան իրենց անդնդախոր ձորեր, մութ ու խոնաւ քարայրեր, Ագբիցիները գնացին դէպի իրենց թաւախիտ անտառներ. Շէնիկ-Սէմալցիներից մի մասը կտրուեց (Կէլիէուզանի Պէրպերի ձոր), իսկ մի մասը գնաց Կուռտիկի փէշերը ապաւինելու. Իշխանձորցիներից մէկ մասը նոյնպէս կտրուեց (Նահատակաց ձոր), միւս մասը դիմեց դէպի իր գիւղի սահմանները։ Կէլիէկուչանցիները գրեթէ ամբողջովին ապաւինեցան Շատախի շրջան—Աթանագինէի անտառի մէջ, ուր համախմբուած էին նաև Շատախի շրջանից ազատ մնացած ժողովուրդները։*

*Իրաւ է թշնամին տիրած էր Անտագ-Գէբենին, կոտրած էր Սասունցու դիմադրութեան թափը, բայց դեռ շատ բան ունէր անելիք։ Նա շատ լաւ էր ճանաչում սասունցուն. ամեն մի քարի, ձորի տիրելու համար հարկաւոր էր կռուել և զոհեր տալ։ Մինչև յուլիսի 30-ը հազիւ Անտոգ, Գեբեն, Կէլիէկուչան և Կոշիկ կարողացաւ... ամայացնել, այնուհետև ուշադրութիւն դարձրեց մասնաւոր վայրերի վրայ։ Ինչպէս միւս տեղերի, նոյնպէս Աթանագինէի անտառի վրայ յարձակուելու ատեն հանդիպեցաւ դիմադրութեան և մի ամբողջ օր ռմբակոծեց և գնդակոծեց, բայց հոն ապաւինողներից մեծագոյն մասը ազատուեցաւ, անցաւ Կէլիէկուչանի ձորեր և մացառներ։ Օգոստոսի կէսից սկսեալ թշնամու բանակը կենտրոնացաւ Շէնիք իր կատարած եղեռնը—բնաջնջումը—վերջացած համարելով և բաւականացաւ շաբաթական երկու անգամ ընդհանուր խուզարկութիւն անելով. աշիրաթների ալանթալանի և վրէժխնդրութեան բորբոքած տենչերն ևս յագեցած, Սասունը ոտքի տակ առած, և ընդմիշտ կործանած համարեցին և հեռացան, միայն շրջակայ քրդերը խմբեր կազմելով և օգտուելով Շէնիքի զօրաբանակից յաճախ շրջում էին սար ու ձորեր կողոպուտ և աւար ձեռք ձգելու համար. սոնք միշտ ընդհարման էին բռնւում զինուած սասունցի աստանդական խմբերի հետ, որոնք ամեն ինչ կորցրած, կեանքից պեզարած ոչ մի բանի չէին խնայեր։ Այդ թափառաշրջիկ խմբերը կամաց-կամաց իրարու միացան, հաւաքուեցան Կէլիէկուչան, որ ամենայարմար վայրն է վտանգի պահուն. հոն եկան հաւաքուեցին նաև անտէր կանայք և երեխաններ և մի տեսակ կեանք սկսաւ Սասնոյ կենտրոն Կէլիէկուչանում։*

*Սկիզբներ կառավարութիւն կարծելով, որ Սասունցու հետքը անգամ չմնաց, օգոստոսի վերջերը իր զօրքը յետ քաշեց Սասունից և ուզեց ուղարկել ռուսական յառաջխաղացումը արգելելու.*

Խոշգելտի գիւղը, ուր հաւաքուած են եղել Ջմբրանցի թոռնները. Ջնդին, Սատին, Հայգարը և հարիւրաւոր քիւրդեր շրջակայ գիւղերից, որոնք հրամանի են սպասելիս եղել։ Գայմագամի հրամանատարը լինում է ժանտարմա Նէզերը, որ գիւղը հասնելուն պէս սկսում է սոսկալի և բարբարոսական մի ջարդ, որով այդ գիւղի արական բնակչութիւնը գրեթէ ամբողջովին բնաջնջւում է. (Խոշգելդիի կոտորածի մանրամասնութիւնները տես «Աշխատանք» № 26)։

Փախչելով ազատւում են միայն Խոշգելտուեցի քեաթխւդ Ցարթօն և Նազարեան Սարգիսը 12 երիտասարդի և 2 երեխաների հետ, բայց Կոփի սահմանն անցնելով իրենք իրենց ազատուած են համարում և խոտերու մէջ պառկում են հանգստանալու, երբ իրենցից մէկը ատրճանակ է արձակում, միևնոյն գիշերը Կոփի վրայ յարձակում գործող Մուսա բէկի բանակից մի քանի քիւրդ ձիաւոր վրայ են հասնում և բացի երկու երեխայից 14 երիտասարդներին ևս հնդակահար են անում։

Մուսա բէկի բանակը մութ-ոյս—արշալոյսին—բռնում է Կոփի վրայ և իբրև տնապահ այնտեղ մնացող հետևեալ անձերը կոտորել է տալիս. ահա ցուցակը սպանուած կոփեցիներու.

1. Սերոբ Թէրզեան, 2. Մովսէս Մովսէսեան, 3. Մարտօ Պապէեան, 4. Հլղաթ Խչոյեան, 5. Հլղաթ Ասլօ-Ղազարեան, 6. Մարգար Ցարէեան, 7. Բիթլիսցի Ումրշատ (Բուլութ), 8. Ռաշօ Սիմէեան, 9. Մխօ Միքայէլեան, 10. Խանէ Թէրզեան, 11. աղջիկը Ղութրաթ Թէրզեան, 12. Աւագ Ղզրէեան, 13. Բեբոբ Ղզրեան 14. Ժամկոչ Աստուր, 15. Սուար Ըռճոյեան, 16. Ղազարեան Մկրտչի կինը՝ բլուրցին, 17. Թուրք Ցակոյի կինը, 18. Ղուկաս Ցակէեան, 19. Մխաք Մելքոնեան, 20. մշեցի դասպ Յովհ., 21. Եղօ Գրգոյեան, 22. Յովհաննէս Բօթոյեան, 23. աղջիկը՝ Սալվի, 24. Գրիգոր Գոլոյեան, 25. Աւետիս Ոսկերչեան, 26. Գրիգոր Կաղնեան (բիթլիսեցի վաճառական), 27. ոսկերիչ Ցարթօ (բիթլիսցի), 28 խլըշճի Յովհաննէս (բիթլիսցի), 29. Խաչիկ Խանամերեան (բիթլիսցի), 30. Արսէն Ցակոբեան (բիթլիսցի), 31. Ցակոբ (Արսէնի հայրը), 32. բիթլիսցի Տիգրան, 33. Գետօ Պէտէեան, 34. Զարչի Մուրադ (բիթլիսցի), 35. դահվէճի Միսաքի մայրը, 36. Խաչօ Դաւոյեան, 37. Վոշիկ Գօզէ, 38. Գօզէի աղջիկը։

Հարիւրի մօտենում է թիւը այդ օրն սպանուածների, որոնք շրջակայ գիւղերից փախչելով ապաստանած էին Կոփ, իբրև ապահով մի վայր, բայց հնարաւութիւն չունեցանք ցուցակագրելու։

Լիզի կամ Վարի Բուլանըղի Գերոլան, Ալըրի, Փիօնք, Մալաքենտ, Ագրակ, Կոզակ և Առնջիկ խառն քրդաբնակ հայ գիւղերի կոտորածը երկարաձգւում է մինչև յունիսի 28-ը, որ այդ տարին զուգադիպում էր Վարդավառին. և մինչ ուրիշ տարիներ հայ ժողովուրդը հնաւանդ սովորութիւններով և ուրախութեամբ տօնում էր Վ ա ր դ ե վ ա ռ ը, լզեցիների և շրջակայ հայ գիւղերի համար լինում է սուգի և արիւնաթաթաւ բնաջնջման օր։ Այդ շրջանի ամբողջ հայութիւնը լզեցիների հետ հաւաքելով առանձին հարիւրեակներով լցնում են զատ-զատ շինութիւնների մէջ։ Լիզի առջև Տապան-Զօլ կոչուած ձորակի մէջ դիրքեր փորելու պատրուակով հայերի ձեռքով խորունկ փոսեր են փորել տալիս և խումբ խումբ ձեռքերնին կապոտած տանում են փոսերի գլուխը և սրնահար անելով կոտորում և հողով ծածկում։

Կիներն ու աղջիկները ենթարկւում են լպիրշ անարգանքների և լլկանքների, շատերին բնտրելով առևանգում և իւրացնում են. իսկ մնացածները մի կերպ իրենց գոյութիւնը քարշ են տալիս մինչև որ Լեզ գրաււում է ռուսներից և նոքա փախչելով անցնում են Կոփ։ Ռուսները 4—5 օր յետոյ նահանջում են (յուլիսեան նահանջը), թուրքերն առաջանում են մինչև Կոփ, կարացողը փախչում է, հիւանդ և անկարող մասը մնում է տեղն ու տեղը. նորից գերւում են և վերադարձւում Լեզ, ուր 40-50 այդ կիները լցնում են Մալոյեան Գրգոյի տունը և կրակ տալով այրում։ Հրկիզուող այդ կիներից յանուանէ յիշւում են Մարիամ Սիմոնեան, Սեփոռէ Մանուկեան են.։

Վարի Բուլանըղայ հայութեան մեծ մասը փախչելով կազատուի եղեր, եթէ, ինչպէս հաւատացնում են այդ շրջանի մեր հայրենակիցները, միւդիր Խալաֆ էֆէնտին վստահացուցած չլինէր թէ պիտի պաշտպանէր գիրենք։

Խալաֆ էֆէնտին «երկու կողմի վրայ էլ կաղում էր» կամ ինչպէս ասում է ժողովուրդը, «երկու կողմն ալ կարճայ»։

Հայերի մօտ՝ հայոց բարեկամ էր, թիւրքերի մօտ՝ թիւրքերին։ Հայերին առերես պաշտպանում էր այն մտածումով, թէ երբ ռուսները գան, հայերն իրեն պիտի պաշտպանեն. հակառակ պարագային՝ ինքն արդէն իր դիրքին և ունեցածին տէրն էր։

Միմիայն Լեզ գիւղը, Վարի Բուլանըղի կառավարութեան կեդրոնը, ունէր 203 տուն կամ ընտանիք՝ 1635 անձ զուտ հայ բնակչութեամբ, որոնցից, ըստ յականէ յանուանէ ցուցակագրութեան Զաքար Սիմոնեանցի, սպանուած, գերուած, անյայտացած և զինուոր տարուած են 895 անձ. ազատուած 750։ Գիւղն ունէր 2,420 եղջիւրաւոր (լծկան, կթան) անասուն, 3,368 ոչխար. 21 ձի, 9 ջրաղաց, 3 ձիթհանք, 1 եկեղեցի, 1 վարժարան, 600-էն աւելի տուն, սենեակ, մառան, մարագ, գոմ են. 2 խանութ՝ իւրաքանչիւրն 4—500 ռուս. լիրայի կարողութեամբ։

Բացի երեսի վրայ թողնուած ցորենից, ձաւար-կորկոտից, իւղից, ձէթից, պանիրից, զանազան կահկարասիներից, հանդերձեղէնից, կանխիկ դրամից են, են, այդ տարուայ ցանքսի բերքը ենթադրւում է 5,240 սոմար ցորեն, 2,800 բարդ խոտ են.։

Փախուստով ազատուած լզեցի ժողովուրդը մազաչափ բան չկրցաւ վերցնել հետը, թողնելով ամեն ինչ անգութ թշնամու ձեռքը։

Ս. Մովսէսեան

15 հոկտ. 1916 թ.
Մեծ-Ղարաքիլիսա

## ԿԱԼԿԱԹԱՅԻ «ՀԱԲԼ-ՕԼ-ՄԱԹԻՆ» ՊԱՐՍԿԵՐԷՆ ԹԵՐԹԻ ԱՌԱՋՆՈՐԴՈՂԸ ՀԱՅՈՑ ՄԱՍԻՆ

### ՀԱՅԵՐԻ ՏՐՏՄԱԼԻ ԴՐՈՒԹԻՒՆԸ

«Հին պատմական ազգերից մէկն ևս հայ ազգն է։ Այս ազգը, չը նայելով որ 1000 տարի է, ինչ կորցրել է իր անկախութիւնը և այլ ազգերի ճնշման տակ ապրել, սակայն իր ազգեցութիւնը ձեռքից չէ թողել, և իր նախահայրերի պատմական մեծութիւնն աչքի առաջ ունենալով՝ հետևել է նրանց գործերին։ Հայերը թէև փոքրաթիւ, բայց աշխատասէր, գործունեայ և առաջադիմութեան ձգտող լինելով՝ ամենուրեք ազգեցիկ դիրք են ստեղծում, երկրի օրէնքների համաձայն են ընթանում, կարևոր գործեր իրանց ձեռքը կենտրոնացնում և վաճառականութեան մէջ գերազանցում բոլորին։ Հայ ազգը չէ վախենում անձնազոհութիւնից և ինչ որ ձեռնարկում է, հասցնում է իր նպատակին։

Անցեալ դարից սկսեալ թիւրքահայերի և օսմանեան պետութեան միջև հակառակութիւն է ծագել, և այս հակառակութեանը քիչ չէ նպաստել Անգլիայի հռչակաւոր նախարարութեան նախագահ՝ հանգուցեալ Գլադստոնը, որն իր հեղինակաւոր ձայնը բարձրացրել էր քրիստոնեայ աշխարհում յօգուտ հայերի ազատագրութեան։ Այն օրից ի վեր թիւրքահայերի և օսմանցիների միջև եղած հակամարտութեան կրակը դեռ չէ հանգել, և իրաւ՝ հայերը միշտ էլ, թէկուզ գաղտնի, թշնամաբար են վերաբերուել օսմանեան պետութեանը։ Այն ժամանակ երբ Գլադստոնը ջատագով էր հանդիսանում հայերի ազատութեանը, ռուսական դիւանագիտութեան շահերը պահանջեցին օսմանեան պետութեանը հովանաւորել։

Ինչևիցէ, մի քանի դարերից (մօտաւորապէս 300 տարուց)

ի վեր Պարսկաստանն է եղել ամենալաւ երկիրը, ուր հայերը հանգստութիւն են ունեցել և պարսից ժողովրդի ու պետութեան շնորհն ու խնամքը վայելելով՝ արժանացել են պետական ու ազգային բարձր պատասխանատու պաշտօնների։ Ո՛չ մի անգամ թշնամութեան հուրը չէ բորբոքուել հայերի ու պարսիկների միջև. հայերն էլ մինչև այժմ պարսից պետական քաղաքականութեան և ազգային իրաւունքների դէմ վնասակար քայլ չեն արել։ Այս է պատճառը, որ հայերն ամեն տեղ սերտ բարեկամութիւն են պահում պարսիկների հետ, ինչպէս և Կալկաթայում, ուր հայերն ու պարսիկները միասիրտ ու միախորհուրդ են և մտերմաբար են վերաբերւում միմեանց հետ։ Որովհետև հայերը սահմանադրութեան օրերում խոշոր ծառայութիւն մատուցին, այս բարեկամական կապն աւելի ամրապնդուեց։ Պարսիկները բնաւ չեն կարող մոռանալ իշխան Մելքոն-խանի ծառայութիւնները, որի կանոնուսոյց գրիչը զգացմունքների յեղաշրջումն առաջ բերեց Պարսկաստանում։ Պարսիկները նաև երախտագիտութեամբ պիտի յիշեն հանգուցեալ Եփրեմ-խանի վերջին ժամանակները կատարած անձնազոհութիւնները։

Ներկայ պատերազմի սկզբին լուր տարածուեց, որ ռուսաց կայսրութիւնը ինքնավարութիւն է խոստացել հայերին, պայմանով, որ օսմանցիների դէմ կռիւ մղեն։ Հայերն էլ վերին աստիճանի քաջութեամբ ու անձնուիրութեամբ օգնելիս՝ իրանց քաջամարտիկ երիտասարդները զէնքի տակ մտնելով, ռուսները փայլուն յաղթութիւն ունեցան Թիւրքահայաստանում։ Օսմանցիք, որոնք 30 տարուց ի վեր թշնամութիւն ունէին հայերի դէմ, այս բանը պատրուակ բռնելով՝ հայերի կոտորած սարքեցին Փոքր Ասիայում։ Թէ ինչ աստիճան այս խնդիրը ստուգութիւն ունի և ինչքան հայեր սպանուեցին—դժուար է ճիշտ գաղափար տալ. սակայն անուրանալի է, որ մեծ թւով հայեր սրի անցան և կենդանի մնացողներից փախան կամ Կովկաս և կամ Պարսկաստան։

Պարսկահայերի թիւը ամբողջ Պարսկաստանում 40,000-ից մինչև 50,000 (sic) կը հասնի։ Նրանց մեծագոյն մասը գտնւում է Ատրպատականում, Թէհրանում և Սպահանում։ Մօտաւորապէս հինգ-վեց հազար երիտասարդ զինուած վերջին տեսակի զէնքերով՝ պատրաստ կան։

Ռուսների Սպահան ժամանելու օրն էլ հայերը յայտնի և գաղտնի կերպով օգնեցին, և բացի այդ՝ իրանց ուրախութիւնն ու խնդակցութիւնը յայտնեցին։ Անհաւասիկ օսմանցիները առիթից օգտուելով՝ ուզում են պարսկահպատակ հայերի հետ այնպէս վարուել, ինչպէս որ վարուեցին Հայաստանում։ Այս խնդիրը դեռ կարօտ է ստուգութեան, որովհետև բացի մի քանի առանձին հեռագրերից, որ տեղիս հայերը ստացել են, ուրիշ լուր չը կայ։ Ռէյտէրի գործակալութեան մի հեռագիր էլ յայտնում է, որ Կ. Պոլսի՝ Միացեալ Պետութիւնների դեսպանը Բ. Դռնից խնդրել է, յանուն մարդասիրութեան, որ պարսկահայերին չկոտորեն, ինչպէս որ եղաւ Փոքր Ասիայում։ Այս և Սպահանից ստացուած միւս հեռագրերը ապացուցանում են, որ օսմանցիներն իրանց իշխանութիւնը տարածել են մինչև Սպահան և Ուրմիայի լիճը, որովհետև յիշեալ տեղերում ռուսաց զօրքի և դաշնակից պետութիւնների ներկայութեան՝ անհնարին էր օսմանցիների համար ծայրայեղութիւններ գործել հանդէպ հայերի, յատկապէս երբ այդ կողմերը մաքրուած էր օսմանցիներից ու գերմանացիներից...

Թէ ինչ ճանապարհով են հասել Ուրմիայի և Սպահանի կողմերը—յայտնի չէ։ Երբ այս լուրերը լուսաբանուած լինէին և գրաքննչութիւնը մինչև այս աստիճան խստութիւն գործ դրած չը լինէր, անշուշտ այսքան մտահոգութեան առիթ չէր ներկայանայ։ Երբ որ խնդրի խուլութիւնը վարագուրուած է, ծայր է տրւում երևակայութեան ու մտատանջութեան։ Վերջապէս, քանի որ ոչ մի տեղից տեղեկութիւն չունենք, չենք կարող յիշեալ լուրերը հաստատել կամ հերքել, սակայն յաւենայն դէպս ամեն կերպ համակրող ենք հայերին և ցանկացող նրանց բարօրութեանն ու հանգստութեանը, և եթէ երբևիցէ ստոյգ լուր առնենք և իմանանք, որ մեր ազդեցութիւնը կարող է օգտակար դեր խաղալ՝ ոչ մի եղանակով չենք խնայի մեր օգնութիւնն ու աջակցութիւնը հայերի հանդէպ։

(«Մշակ») Թարգմ. Պոլարիս

# Գեղարուեստ

## ՀԻՆԴԱ

(հատուած)

Հնդկաստանի փարթամ ծոցից
Դիւթանքներով միշտ հարուստ.
Իմ անցուցած վառ օրերից՝
Ոչ գանձերը, ոսկին, զմրուխտ
Ոչ կանաչը յաւերժական.
Արմաւ, կոկոս ու մրտենու,
Անտառները ոսկեպարար—
Այլ լոկ միայն կոյսը նրա
Զքնաղադէմ սիրուն Հինդան,
Կաշկանդել է սիրտս ու հոգիս
Թափառանքում տոչորող։
Նա մի կոյս էր անարատ՝
Ինչպէս երկինք անապակ.
Նա վհուկ չէր կասեմ ես
Ոչ գնչուհի-մի գուշակ։
Նա տաճարում Բրմուհի էր,
Լեռների մէջ խաշնարած.
Անապատի բարկ աւազում,
Հորփոր սառը ջրհորի։
Հանդիպեցի Հինդային,
Երբ մշուշն էր իմ հոգին,
Թանձր քօղով պարուրել.
Երբ յոգնատանջ ու թափառ,
Փնտրում էի ես մի այր…
Կանչեց նա ինձ իրա մօտ,
Քաղցրահամբոյր ժպիտով,
Վանեց գիշերն իմ հոգու,
Արշալոյսի հէքիաթով՝
Ցօղեց մոլար իմ սրտին,
Դիւթանք, Երազ ու Կարօտ,
Դէպի անհաս իր ուղին,
Դէպի յաւերժ անհունի…

Սար—Յով.

# Գրականութիւն

## ՀԻՆ ՄԵՂԱՒՈՐԸ

### Ա.

Տէր Ստեփանի դէմ, որքան էլ քարոզների մէջ խարազանում էր ժողովրդին, ոչ մի տրտունջ չէր լսւում, կանայք, որ սիրում էին իրանց զրոյցների բողձան բանալ ժամասացութեան միջոցին, ոչ մի քահանայի նկատողութիւնը բանի տեղ չէին դընում, բայց հէնց որ Տէր Ստեփանը դասից երեսը դէպի նրանց էր թեքում, իսկոյն իրար փէշից քաշելով ծմրանները կտրում էին։ Տէր Ստեփանից և՛ դողում էին, և՛ նրան սիրում։ Նա 60 տարեկան, պարթև մարդ էր, բեղերը թաւ, միրուքն ալեբեկ, այտերը լեք ու կարմիր, աչքերը մեծ, քիթը բարեձև ու ծայրը կեռ, ձայնը գոռ, ահեղ։

Պատկերով ու կազմով անչափ նման էր Խրիմեան Հայրիկին։ Այդ հուժկու տղամարդը լայն ափնաւոր մահուդէ գդակը մինչև ականջները քաշած, հաստ գաւազանը կռան տակ, ձեռները թեքերի մէջ խրած, սովորաբար անցնում էր փողոցով միշտ լուռ ու գլխահակ, կարծես մի ծանր, շատ ծանր վիշտ շալակած ման ածելիս։

Քաղաքի իշխան մարդիկ նրան տեսնելիս խորհրդաւոր ժըպտով իրար շշընջում էին «հին մեղաւորը գնում է»։ Եւ չընայած այդպէս ասելուն, Տէր Ստեփանի քարոզի հերթին ընդարձակ եկեղեցում ասեղ գցելու տեղ չէր լինում և, որ զարմանալին է, առաջին կարգում այդ իշխան մարդիկն էին լինում կանգնած։

—Եթէ սա անմաքուր անցեալի տէր է ու հին մեղքեր ունի,, ասում էի ինքս ինձ, ինչո՞ւ ժամուորների մեծ մասը, մանաւանդ կանայք—ահիլ թէ ջահիլ—միւս քահանաներին թողած Մեծ պասին խոստովանւում էին այդ զարգանդ երէցի մօտ ու նրա ձեռից ճաշակ առնում։ Կանանց գրաւելու համար ոչ կլկլան ձայն ունէր, ոչ օծած մազեր, ոչ գիւթող ժպիտ։ Չըգիտէի, պատճառն ինչ էր, որ այդ երէցից ամենն էլ խորապէս պատկառում էին ու միևնոյն ժամանակ անչափ սիրում։ Ինչքան էլ հետաքրքրւում էի, ոչ ոք չէր կարում ինձ իրա պատասխանով գոհացնել։

Քաղաքից հեռանալուց մի օր առաջ այցելեցի իրան Տէր Ստեփանին։ Զէնքերով զարդարուած էին պատերը այն սենեակի, ուր նա թոռներին շուրջը ժողոված հէնները զրոյց էր անում։

Երբ յայտնեցի այցելութեանս պատճառը, նա երեխանց դուրս ուղարկելով դիմեց ինձ.

—Իրաւունք ունեն ինձ հ ի ն մ ե ղ ա ւ ո ր կոչելու. քահանան էլ սխալական մարդ է, արդարև ես մեղանչել եմ, բայց Աստծուն էլ յայտնի է, որ Դ ա լ ի ք է շ ի շ ը այդտեղ մեղ չունի. ինչ եղել է, ակամայ.—ահա լսէք, պատմեմ գլխովս անցածը, ով գիտէ, մէկ էլ իրար ողջ տեսնենք թէ չէ։

«Կարապետ հայրս ծնուած էր Բուլանըխ գաւառի Սովլամաղ գիւղում։ 1828-ին գաղթել է ռուսաց կողմը ու բնակուել Սուլդա գիւղում։ Եղել է նշանաւոր հայկարան, երեխաներ ժողովելով կարդացրել է ու մնացել այդտեղ։ Նրա առաջին ծնունդը, ես, աշխարհ եմ եկել 1837-ին. մի տարեկան եմ եղել, մայրս վախճանուել է։ Հայրս մի քանի տարի այրի մնալով նորից ամուսնացել է, յետոյ տեղափոխուել Ա. քաղաքը։

Յիշում եմ, մի կրպակում մանրունք էր ծախում ու մի քանի տղաներ կարդացնում։ Ինքս էլ կարդալ սովորեցի կրպակում հօրս ձեռի տակ։ Փոքրուց համառկող, յամառ տղայ էի, բաւական անուշ ծեծեր եմ կերել հօրիցս այդ յատկութիւնների համար։ Յետոյ կարդալս շարունակեցի քաղաքի ուսումնական խալֆայ Տէր Սիմոնի մօտ։ Սակայն ուշք ու միտքս, կարդալը թողած զէնք ու զրահի վրէն էր. մի զինուած ձիաւոր տեսնելիս սիրտս վեր էր թռչում, թէպէտ խեղճ հայրս տանը ոչ զէնք ունէր և ոչ ձի։ Նրա հարստութիւնը իրա հայկարանութիւնն էր։ Բայց պատմում էին, որ Յովհաննէս պապս թէ հարուստ մարդ և թէ երեսնի ձի հեծնող, զէնք բանացնող է եղել։ Պապիս արիւնը քաշում էր ու օրէցօր իմ զինասիրութիւնը զօրեղանում։ 14 տարեկան միջոցին սիրտս այնպէս բուռն փափագում էր զէնք ունենալ, որ թուր կամ դաշոյն տեսնելիս քիչ էր մնում կրծքիս տակից դուրս պրծնի։ Հայրս դէմ էր իմ հակման, միշտ սաստում էր, որ ուշքս գրին պահեմ։ Հօրս չըդառնացնելու համար 1854 թ. նրա կամքով թողի մեր քաղաքի դպրոցը ու գնացի Ախալցխա, դարձայ նշանաւոր Կարապետ Սրբազանի մօտ փոքրաւոր, որ ռուսերէն սովորեմ։ 8 ամսում բաւական սովորել էի, բայց մեղքս չըծածկեմ, խելքս աւելի զէնք բանացնելու վրէն էր, որովհետև այդ միջոցին կռիւն սկսուած էր թուրք ու ռուս զօրքերի մէջ։ Հայրս կարծելով որ կարող եմ փախչել, կամաւոր դառնալ, պահանջեց որ վերադառնամ իրա մօտ։ Եկայ։ Առաւօտ-երեկոյ եկեղեցում տիրացութիւն էի անում, ցերեկը կրպակում ճոթ ու մանրունք վաճառում։

18 տարեկան միջոցին զօրեղ երիտասարդի տեսք ունէի. երկու հոգի չէին կարում բազուկս ոլորել։

Ժամասացութիւնն ինձ չէր գրաւում, ծանր բեռն էր թւում եկեղեցի գնալը։ Հօրիցս ծածուկ գնել էի դաշոյն, ատրճանակ ու պահում էի չալէ լայն գոտկիս ծալքերում, որ մարդիկ չընկատեն։

Ուսման սէր չունենալով՝ քահանայ դառնալու մասին ամենևին չէի մտածում։ Ճարականի տեղ գիշեր ցերեկ Քէօռ-օղլու խաղերն էի անգիր անում ու երգում, այնպէս աշխուժով, որ լսողները ոգևորւում էին։ Մուրազս լրացնելու համար մի ձի էլ առայ. զէնքերս կապած, ձին հեծած կարծում էի թէ իսկ և իսկ Քէօռ-օղլին եմ, ինձ պակաս էր մի Ն ի գ ա ր խ ա ն ո ւ մ կամ մի Խ ո ւ ր դ ա խ ա ն ո ւ մ։ Սիրտս ուզեց կարգուել, հայրս դէմ չէր. քաղաքում նշնուեցի. երկու տարի սիրավառ կեանք քաշելուց ետ պսակուեցի։

Հայրս մտածել էր՝ երբ կարգուեմ, կը հանդարտուեմ, ոտներըս ծալած տանը կը նստեմ, բայց այդպիսի բան չեղաւ. զէնքերըս կապած, ձին հեծած վազում էի դէպի արկածները։

Այդ միջոցին հայրս կրպակը փակել, վարժապետի պաշտօնով հայոց դպրոցում ծառայում էր. մէկ էլ տեսայ յանկարծ կանգնեց ու սաստեց ինձ.

—Դու պիտի տէրտէր դառնաս։

—Այ, հէ՜յ՜յ, ասի, ես խենթ ջահէլ եմ, ժամի ապրանք չեմ, ինձ ծանր լծի տակ մի գցիլ, թող հացս ուրիշ ճամբով ճարեմ։

—Մէրդ ողջ մնար, ես ինքս տէրտէր կը լինէի, որ Աստծու տանը ծառայէի. այդ ինձ չըյաջողուեց, այժմ ցանկանում եմ, որ դու լինես, վճռական ասեց հայրս։

Ինչքան էլ հակառակուեցի, փախս տուի, հօրս ձեռից չազատուեցի։ 1861 թուականին էր, գնացինք Թիֆլիս։ Առաջնորդն էր Ջալալեան եպիսկոպոսը, հրամայեց քննել։ Երանի դժուար բան հարցնէին, կտրուէի, բայց միայն կարդալ տուին Հին ու Նոր Կտակարաններից. վարժ կարդալ գիտէի, Եօթ խորհուրդները նոյնպէս հարցրին։ Վերջացաւ քննութիւնը, խառնեցին միւս տիրացուներին։ Առաջնորդը 18 հոգու միանգամից քահանայ ձեռնադրեց։ Քառասունքից դուրս եկայ, ինձ նշանակեցին յայտնի Բ ո ւ ր ն ա շ է թ ուխտատեղու վերահսկու։ Կամաց կամաց դարձայ կարգին տէրտէր. հայրս իրան երջանիկ էր զգում. 5 տարի էր անցել, գոհ էի վիճակիցս, ունէի մի տղայ, երկու աղջիկ, ինձ յանձնել էին հովուելու Ջիվիլէկ ու Զանդուրա գիւղերը։

1866 թ. սիրելի կողակիցս տիֆով հիւանդացաւ. երեխայից էր վարակուել, երեխան ազատուեց, իսկ կինս վախճանուելով սրտիս մի այնպիսի դաղ դրեց, որի կսկիծը այժմ էլ զգում եմ։ Կասես երկինքը գլխիս փուլ եկաւ, երբ 28 տարեկան առոյգ հասակում այրիանալով մնացի 3 որբի հետ տան պատերին նայելիս։

բամայում է ծերունի վարժապետին գցել հին, խարխուլ շէնքի մէջ, որ բանդի տեղ էր ծառայում, դուռը վրէն փակել ու պահապան դնել։

Իրիկնադէմին Զանդուրայից դառնալով իմացայ եղելութիւնը, էլ չըհամբերեցի, զէնքերը վրէս շտապեցի արգելարանը. հիմի որ 60 տարեկան եմ, այս պէս դեռ ուժով եմ, ինչ կը լինէր 30 տարեկան ժամանակս, հերստած հասայ պահապան Կոստանին, հաւի ձագի պէս զէն շպրտեցի, մի քացի զարկելով հին շէնքի դուռը ջարդ ու փշուր արի ու հօրս հանելով տարայ տուն։ Պրիստաւին վազել էին իմաց տուել, որ գայ արգելի, նա վախից չէր մօտեցել. «գիժ է, ասել էր, նա ինձ կը խփի, ես քահանայ մարդու վրայ իրաւունք չունեմ»։

Գործակալի գրգռումով հոգևոր իշխանութիւնը իմ աղջիկ փախցնելու գործը յանձնեց մարմնաւոր իշխանութեան։ Քննիչը մարդ էր ղրկում ետևիցս, չէի գնում։ Պահանջում էր պրիստաւից, որ ինձ տանի։ Սա այնքան ինձնից դողում էր, որ փողոցում տեսնելիս խանութներն էր պրծնում։ Նա յոյս ունէր որ քաղաքացիք ինձ կը բռնեն ու իրան կը յանձնեն—ինքն էլ կը ներկայացնի քննիչին։ Այդ չըյաջողուեց։ Վերջը իշխանութիւնը կարգադրեց, որ մինչև գործի վճռուելը աղջիկը ուրիշ ընտանիքում պահ տրուի։ Գեղանուշն արտասուելով տեղափոխուեց։ Բայց ես չէի համբերում, ամեն օր այցելում էի սիրածս հրեշտակին։

Երբ տեսան ինձ չեն կարողանում, աղջկան տարան քննիչի մօտ։ Գեղանուշը նրա հարցին պատասխանում է. «Տէր Ստեփանն ինձ ուժով չի փախցրել մեր գիւղից, ես իմ յօժար կամքովս եմ եկել նրա տուն, որովհետև սիրում եմ նրա երեխաներին»։

Ա. քաղաքի իշխանները չը կարենալով մարմնաւոր իշխանութեան միջոցով ինձ պատժել տալ, դիմեցին սուր միջոցի. նիւթական վնասներ հասցնելով կամեցան ինձ ընկճել։ Դպրոցի գործը նրանց ձեռին էր. նախ հօրս հեռացրին ուսուցչական պաշտօնից, յետոյ Առաջնորդից կարգադրութիւն բերել տուին Գործակալի վրայ ու իմ ձեռից խլելով գիւղերի հովուութիւնը ուրիշ քահանայի յանձնեցին։

Հայրս ծերացած, անկնիկ, անգործ, ես էլ թէև առոյգ, յաղթանդամ, բայց ծխից զրկուած, երևակայեցէք թէ ինչ կը լինէր իմ և հօրս վիճակը։

Մարտիրոս աղան և միւս իշխանները խիղճ ու գութ մոռացած պահանջ էին դրել—եթէ աղջկան իմ երեխաների մօտից չեմ հեռացնիլ, իբրև հայ եկեղեցու կանոնի դէմ գնացող քահանայ իրաւունք չունեմ մի րոպէ քաղաքում մնալու։ Իսկ ես յամառուած պատասխանում էի. «Ոչ, Գեղանուշը իմ տանից չեմ հեռացնիլ. իրա կամքով եկել է, ես դէմ չեմ լինիլ, եթէ կամենայ իրա կամքով էլ գնալ։ Բայց քանի որ նրա մեղքը վերցրել եմ, մինչև մահ պիտի պահպանեմ նրան, ինչքան ուզում էք դրա համար ինձ հալածեցէք»։

Գեղանուշի տեսքը մի հիացք էր, թշնամու աչքի փուշ էր, ափսոս, որ պատկերը չը մնաց։ Ճակատը լայն, վարսը գեղեցիկ, թշերը քնքոյշ ալ վարդի պէս, բերանը փոքր, պռոշները նռան գոյն, հասակը նոճու պէս բարձր, կրծքի երկու կողմ ծոցերը լիք։ Անունին համեմատ մի գեղեցիկ ու անուշ արարած էր։

Ամբողջ ընտանիքով սոսկալի յուզմունքներ էինք կրում։ Ինչ ասել կուզի, այդ վիճակն ամենից շատ ազդում էր քնքոյշ Գեղանուշի վրայ։ Չընայած ամեն տեսակ հոգատարութեանս, որ քաջ մնայ, ուշ չըդարձնի ժողովրդի տմարդի հալածանքների վրայ, նա օր օրի վրայ մաշւում էր, վշտից ուտելը մոռացել էր։ Թէ հոգուս խորքերում լռելեայն ինչե՜ր եմ կրել անմեղ աղջկայ տանջանքները, աղի արցունքները տեսնելիս, այդ միայն Աստուած է յայտնի։ Ամօթից արևի տակ չէր ելնում, քաշւում էր դրացու երեսին նայել, վա՜յ թէ ասեն՝ աղջիկ, ինչպէս յանդգնեցիր մի երիտասարդ սիրել, որն ուսերին փարաջա ունի։ Ամիսներով տանը նստելուց խեղճը սալարել էր արևադուրկ տունկի պէս։ Նա աւելի խելօք, աւելի առաքինի էր, քան թէ քաղաքի իշխանների բոլոր կանայքն ու աղջիկները, բայց նրա համարձակ քայլը աններելի մեղք էր համարւում հասարակաց բերանում. նա ճնշուելով նախապաշարմունքի ծանրութեան տակ պիտի զոհուէր....

Քամալեանց Մ.

(Շարունակութիւնը հետևեալ անգամ)

---

# Մատենախօսութիւն

## ԴԷՄՔԵՐ ԵՒ ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ

### ԱՐՏԱՇԷՍ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

Ա.

Թրքահայ մտաւորականներու վերջին մարտիրոսագրութեան առթիւ կարգ մը յայտնի և յարգելի դէմքեր մոռացութեան մատնուած են. ոեւէ անբարեացակամութեան կամ դիտումի հետևանք չէ ասիկա անշուշտ, այլ որովհետև ընդհանուր տեսութիւններու մէջ մենք ստիպուած ենք կանգ առնել մասնաւորաբար այն գրողներուն վրայ, որոնք ժամանակաշրջան մը կը յատկանշեն կամ ստեղծողը եղած են այդ շրջանին։ Բայց այդ մէկ քանի դէմքերուն հետ և անոնց քով կան ուրիշ սիրուած և յարգելի արևմտահայ գրողներ, որոնք այսօր իրենց եղբայրներուն հետ անհետացած են Թրքական խաւարին մէջ։ Պիտի վերադառնա՞ն մեզի օր մը, ո՞վ գիտէ. մեր սուր վիշտը կամոքուի տակաւին տարտամ յոյսով մը. ամեն պարագայի հետաքրքրական է անշուշտ մի առ մի զանոնք ներկայացնել արևելահայ հասարակութեան և անոնց մէկ բարոյական և ֆիզիքական դիմաստուերը ներկայացնել։

Արտաշէս Յարութիւնեան այն նրբազգած, խոհուն և իմաստուն բանաստեղծներէն մէկն է, որուն երանգաւոր արուեստը, խորաթափանց և մանրակրկիտ խղճմտութիւնը չէին կարող զինքը հասարակ ժողովուրդին բանաստեղծը դարձնել։

Իր յատկութիւններով և թերութիւններով անիկա ընտրեալ և գրագէտ դասակարգին մատչելի հեղինակ մըն է և այդ է պատճառը թերևս, որ իր անունը մեծ ծաւալ չէ ստացած։

Անիկա սիրուած և արդէն իսկ հռչակուած բանաստեղծն էր սակայն Թրքահայ մտաւորական մանաւանդ նոր սերունդին, որուն կը պատշաճէին արուեստին համար մտահոգութիւնները, վարանումները և յղացման ու երկունքի չարչարանքները։

Այս անգամ իմ նպատակս չէ խօսել Արտաշէս Յարութիւնեանի բանաստեղծութեանց վրայ. պիտի ջանամ ներկայացնել մարդը իր հոգեկան բարձր յատկութիւններով, իր մտքի բացառիկ ընդունակութիւններով, ինչպէս ես զինքը անձամբ ճանչցայ։

Յարութիւնեան Մալկարացի էր և ծնած՝ 1873 թուին։ Իր ուսումը ստացած է Մալկարայի նախնական ազգային վարժարանին մէջ և ինքնօգնութեամբ ու ժրաջան աշխատութեամբ հասած մտաւորական այն բարձր մակարդակին, որով կը զարմացնէր իրեն ծանօթացողները։ Եւ յիրաւի զարմանալի երևոյթ մըն էր ինքը. Մալկարա Ռումէլիի կողմը փոքրիկ գիւղաքաղաք մըն է սահմանափակ և զրկուած բոլոր առաւելութիւններէ։ Իր հայրը, պարկեշտ և առաքինի մարդ մը, ուսեալ և բանիմաց, առևտուրով կզբաղէր. որդիքը դպրոցը թողելէ ետքը հարկադրուած կը մտնեն իրենց հօրը ասպարէզին, այսինքն կրպակին մէջ։ Ու մայրենի հողէն կտրուած, հեռու մայրաքաղաքի խանդավառ և գրական տաք միջավայրէն Ռումէլիի այդ անշուք անկիւնին մէջ կորսուած այդ ընտանիքը, ինքն իր մէջ ամփոփուած իր սեպհական շունչովը կսկսի տաքնալ։ Արտաշէս և իր եղբայրը Վահան, որ նոյնպէս գրական տաղանդ ցոյց տուած է իր ցանցառ և արձակ գրութիւններուն մէջ, անխոնջ, յարատև և լաւ

դասաւորուած ընթերցանութեամբ կը լրացնեն իրենց դաստիարակութեան անբաւականութիւնը ու կը հասնին իրենց նպատակին։ Արտաշէս Յարութիւնեան, մեր գրական սերունդին մէջ ամենէն կիրթ ճաշակը և գրական հասկացողութիւն ունեցող հազուադէպ անձերէն մէկն է. և զարմանալին այն է, որ իր մտքի յատկութիւններով ամենէն եւրոպականացած գրողներէն մէկն է նաև։ Իր գրական սկզբնաւորութիւնը ըրած է Զօպանեանի «Ծաղիկ»-ի մէջ և 90-ական թուականի ամենէն փայլուն գրական անուններէն մէկը կը հանդիսանայ։ Ինքը, այն մէկ քանի գաւառացի գրողներուն հետ առաջին յարձակումը գործած է Կ. Պոլսոյ այն ժամանակի գրականութեան դէմ, որ շնորհիւ համիտեան րէժիմին և մեծ գրական դէմքերու բացակայութեան, որոնք իբր տարագիր մեծ մասամբ Բարիզ կը գտնուէին, ինկած էր տափակ և անհամ միջակութեան մը մէջ։ Իր գրական պայքարը «Գաւառի գրականութիւնը թէ Պոլսոյ գրականութիւնը» դարաշրջան մը կը բանայ մեր գրական պատմութեան մէջ, որովհետև վերջապէս այդ ողջամիտ քննադատութեանց հարուածներուն ներքև է որ հակազդեցութիւնը յառաջ եկաւ։

Այդ միջոցին ես Բարիզ էի և իմ անունս վտարուած էր Կ. Պոլսոյ մամուլէն. բայց այն ժամանակ ինչ որ հնարաւոր չէր մեզ համար հրատարակութեան միջոցաւ արտայայտել, կը գրէինք նամակագրութեամբ, և այդ է պատճառը որ շատ հետաքրքրական նամակներու շարք մը փոխանակուած է այն ատենի գրողներու միջև, նոյն իսկ իրարու անձամբ անծանօթ գրողներու միջև։ Ոչ բռնապետական րէժիմը, ոչ ալ զանազան կարգի դժուարութիւնները կ'ընկճէին մեզի. մեր անմեղ մտահոգութիւնները ի հարկէ ոևէ կերպով չէին կարող մեղանչել աշխարհիս ամենէն անմիտ գրաքննիչական օրէնքներուն դէմ, բայց Թիւրքիոյ գրաքննիչներու ծիծաղաշարժ և սարսափահար խստութիւնը ամեն երևակայութենէ դուրս կը մնար։ Մեր նամակագրութեանց նիւթ կը կազմէին օրուան գրական բանավէճերը, հրատարակուած գիրքի մը վրայ թեր կամ դէմ կարծիքներ, ու մանաւանդ մտքերու փոխանակութիւն Եւրոպական գրական հոսանքներու և նոր երևցած գլուխ գործոցներու մասին։

Առաջին նամակը որ ստացած եմ Արտաշէս Յարութիւնեանէ, վէճի մը առթիւ էր։ Արտասահմանեան թերթի մը մէջ հեղինակի մը մասին գրած էի. չեմ գիտեր ինչ հրաշքով ձեռքը անցեր էր. Պոլսական թերթի մը մէջ հոն յայտնած մտքերուս դէմ ինքը պատասխանեց ծաղրանքով։ Ես ի հարկէ չէի կարող և չուզեցի պատասխանել, բայց քանի մը օր ետքը ինծի կը գրէր անձամբ, ներումն խնդրելով և յայտնելով թէ կընդունի սխալած ըլլալը։ Իր այդ քայլը վերին աստիճանի զիս յուզեց և ըսի ինքնիրենս։ «Հազուադէպ է որ մարդիկ ըսեն—սխալեցայ»։

Այդ օրէն սկսաւ մեր նամակագրութիւնը ու շարունակեց— մինչև իմ Պոլիս վերադարձս. բարեբաղդաբար այդ նամակները ուրիշ շատ մը յայտնի հայ գրողներու նամակներուն հետ պահած եմ Բարիզի մէջ։ Անոնք մանաւորապէս հետաքրքրական են այն տեսակէտով որ ամբողջ ժամանակաշրջանի մը մեր գրական յեղաշրջումը կը յայտնեն և նաև իւրաքանչիւր գրողի անհատական և ներքին զգացումը և մտահոգութիւնները գրական արուեստի մասին։

Արտաշէս Յարութիւնեան այն ատեն հրատարակած էր արդէն իսկ բանաստեղծութեանց հատոր մը և ահա իր ներշնչումը սպառած էր ժամանակաւորապէս։

Դժուարահաճութիւնը, վարանումները, խստութիւնը իր սեպհական արուեստին նկատմամբ զինքը մատնած էին տեսակ մը ամլութեան, ուրկէ կը տանջուէր և ուրկէ դարմանուելու ոևէ յոյս չունէր։ Այդ տանջանքը գլխաւոր նիւթն էր իր նամակներուն, ուր միշտ երկարօրէն կը խօսէր իր կարծեցեալ անկարողութեան մասին։ «Կը կարդամ ու կերազեմ ու կեանքս կանցնի հայեցողական առանձնութեան մը մէջ։ Մեր խանութին կից պարտէզ մը կայ ուր աքասիա մը իր հովանին կը տարածէ. այս միջոցիս ծաղկած է աքասիան և անոր բուրմունքը երազային կը դարձնէ իմ ամեն ժամերս։ Եթէ կարենայի գրել թէ ինչ կզգամ, թէ ինչքան քաղցրութիւն և անբացատրելի երանութիւն կայ այս մեկուսացեալ և ինքնամփոփ կեանքին մէջ... բայց ահաւասիկ կզգամ այդ բոլորը և այլ ևս չեմ կարող արտայայտել»։

Ինքնաքննադատութիւնը ոչ ոքի մէջ հասած էր այն սուր, գրեթէ խայթող վիճակին որքան Արտաշէս Յարութիւննեանի մէջ, որուն խիստ քննութեան միակ առարկան ինքն իսկ էր այդ առանձնացեալ և միօրինակ կեանքին մէջ, որը վարելու հարկադրուած էր և որը սկսած էր նախասիրել այն իմաստուն և հանդարտ համակերպութեամբ որ մեծ և ներդաշնակ հոգիներու յատուկ է։

Զապէլ Եսայեան

# Գ ի տ ա կ ա ն

## ՑԵՂԱՅԻՆ ԶԳԱՑՈՒՄ*)

### *ԻԲՐԵՒ ՄԻ ԳՈՐԾՕՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԷՋ*

*(Աշխատութիւն Լորդ Բրայսի)*

Պատմական ուսումնասիրութեան ոչ մի ճիւղ այնչափ չի վնասուել երևակայական տեսութիւններից, որչափ մարդկային ցեղերի ծագման և ստորոգելիքների հետ կապ ունեցող ճիւղերը։ Ցեղերի զանազանութիւններն սկսուել են նախապատմական մթութեան մէջ, և մի նիւթ դառնում է այնչափ աւելի հետաքրքրական և գրաւիչ, որչափ աւելի մութ և անծանօթ է մեզ։ Վարկածներն ունին փորձիչ բնաւորութիւն, որովհետև եթէ անկարելի է ստուգել վարկածները, գրեթէ նոյնչափով էլ անհնար է հերքել տուեալների սակաւութեան պատճառով։ Ոմանք առաջարկել են շատ փորձաչափեր որոշելու համար ցեղային խմբերի խնամութիւնները, սակայն դրանցից ոչ մէկը բաւարար չի եղել։ Կարելի չէ վստահել լեզուին այն պատճառով, որ մեզ ծանօթ են օրինակներ, որոնց մէջ ժողովուրդները կորցրել են իրենց սկզբնական լեզուն և իւրացրել են մի ուրիշ։ Փորձեր կատարուել են մարմնական յատկանիշների միջոցաւ, սակայն յաճախ անստոյգ է եղել վաղեմի գերեզմաններում գտնուած գանկերի որ ցեղին պատկանելը. և որոշ գանկաբաններ ընդունում են, որ գանկի ձևը միշտ նոյնը չի մնում։ Այդ գիտնականներից մէկը վերջերս աւելի առաջ է գնացել և ասում է, որ Նիւ-Եորքում ապրող իտալացի գաղթականներից ծնած երեխաների գանկերի չափումները ցոյց են տալիս ծնողական գլուխներից մի տարբեր ձև։ Ուրիշ գրողներ էլ աշխատել են քաղաք. և ընկերային որոշ օրէնքները հիմ դնելով ներկայացնել իբրև բնորոշիչ մարդկային ցեղի լեզուաբանական որոշ ընտանիքներին։ Կար մի ժամանակ, երբ ներկայացուցչական ժողովի սկզբունքը—ինչպէս Ագորան Հոմերոսեան Յունաստանում և Folkmot—Սաքսոնեան շրջանի Անգլիայում,— համարւում էր Արիական ժողովուրդների առանձին փառքը. սակայն երբ յայտնուեց որ հարաւ-աֆրիկեան Բասուտոների Pitso-ն (Ազգային ժողով) կարելի էր բաղդատել վերոյիշեալ Արիական ժողովուրդների Ազգային ժողովների հետ, քաղաքական և ընկերային հաստատութիւնների միջոցաւ լեզուական ընտանիքներ որոշելու վարդապետութիւնը թառամեց և մեռաւ։

Ցեղային խնամութիւնները՝ նախապաշարումների և կամ կրօնական ծէսերի և սովորոյթների ընդհանրական արմատով որոշելու փորձին էլ չի յաջողել։ Ով որ քրքրել է հէքեաթների այն ընդարձակ գանձարանի էջերը, որ մեզ տուել է համբերատար աշխատող Սըր Ճէյմս Ֆրէյզըր իր The Golden Boug-ի երկասիրութեամբ, գիտէ որ որոշ կրօնական հաւատալիքներ և արարո-

*) Տես «Համբաւաբեր» № 42։

*ընտանիք։ Նրանք անկասկած կարծում էին թէ իրենք արիւնակիցներ են և սերած մի ընդհանուր նախահօրից, և իրենց դրացիներին ծանօթ էին մի ընդհանուր անունով։ Ընտանիքի բոլոր անդամները իրար հետ սերտ կապուած էին. ամենէն ուժեղ կերպով ըմբռնում էին մի պարտականութիւն դէպի տոհմը և նրա պետը։ Սակայն այս կերպ խմբաւորումներ ոչ ցեղականօրէն և գուցէ ոչ էլ լեզուաբանօրէն չէին տարբերւում իրենց շրջակայքում գտնուող տոհմերից, այսուամենայնիւ նրանց թշնամութիւնը դէպի ուրիշ դրացիներ կարող էր լինել կատաղի՝ իբրև թէ նրանք պատկանում էին մի տարբեր արմատի։ Միութեան կապերը կազմում էին ոչ այնչափ միևնոյն ցեղին պատկանելու զգացումները, որչափ ցեղապետի ազգակցութեան և հաւատարմութեան։ Այդ տեսնւում է Մէկսիկայի արիւնակից տոհմերի փոխ-յարաբերութիւնների, ինչպէս նաև Սկովտիայում Կաէլական կլանների* (Clan) *միջև մղուող կատաղի կռիւներում։*

*Միւս կողմից ազգութեան զգացումը որ պատկանում է մի աւելի զարգացած աստիճանին հասած ընկերային յառաջադիմութեան, կարող է ունենալ համեմատաբար փոքր չափով ցեղային տարր։ Այդ զգացումը հաւաքական արդիւնքն է մի շարք գործօնների այն մի հասարակաց լեզուի և գրականութեան, անցեալ քաջագործութեանց ու աւանդութեանց հաւաքական շահի ըմբռնողութեան, հաւատք՝ ազգային հաստատութեանց և գուցէ «ազգային մի առաքելութեան»։ Եթէ ցեղը և ժողովուրդը սահմանակից են, այդ զգացումները կարող են զօրեղացնել և բարձրացնել ազգային ինքնագիտակցութիւնը իբրև մի ամբողջութիւն։ Բացի այդ կարելի է ունենալ մի ազգութիւն բաղկացած տարբեր ցեղերից և տարբեր լեզուներից, ինչպէս Զուիցերիայում, Բելգիայում և Կանադայում։ Նոյնպէս կարելի է ունենալ իրապէս միևնոյն ցեղին պատկանող հասարակութիւններ, բայց բաժանուած փոքր ազգերի և գուցէ իրար թշնամի, ինչպէս սպանիական Ամերիկայի հանրապետութիւններն են։ Սակայն ես այսօր խնդրում եմ ձեզանից աչքի առջև ունենալ ոչ թէ տոհմեր, այլ ժողովուրդներ և մեր քննելիք հարցը, այն է՝ թէ ժողովուրդները իրենց պատմական ասպարէզում ինչ չափով ազդել են մարդկային ցեղին մի առանձին արմատի կամ ճիւղի պատկանելու իրենց ըմբռնողութեամբ՝ անկախ միւս շարժառիթներից, որոնք տրամադրում են նրանց կամ բարեկամանալ իրենց դրացի ժողովուրդների հետ և կամ թշնամանալ։ Ցեղային զգացումը մէկն է այն տարրերից, որ նպաստում է ստեղծելու ազգային զգացում և հպարտութիւն և այդ օգնում է մի ժողովրդի յարակցութեան* (conesion)։ *Այդ ըստ ինքեան պարզ է։ Սակայն ցեղային զգացման ոյժը ազգային սահմաններից որչափ հեռու գնում է՝ իբրև ազգային գործունէութեան որոշիչ մի գործօն։ Պատմութիւնը երբեմն ներկայացուել է իբրև մի արձանագրութիւն ցեղային անվերջ ընդհարումների։ Անկասկած տեղի են ունեցել այդպիսի շատ բաղխումներ և ես ընդունում եմ այդ իրողութիւնը իբրև մի մաս ամբողջ խնդրին և տալիս եմ հետևեալ հարցը. թէ ցեղերն իբրև մարդկային ցեղի անջատ և արիւնով տարբեր ընտանիքներ ինչ չափով պայքարել են միմեանց հետ գիտակցաբար և իբրև տարբեր ցեղեր։*

*Սկսենք հին աշխարհից։ Պայքարներով լի մի աշխարհ էր այդ։ Պլատոն ասում է. «Պատերազմը բնական յարաբերութիւնն է բոլոր քաղաքների միջև»։ Օտարականը ենթադրաբար մի թշնամի է. եթէ նա խօսում է մի տարբեր լեզու, աւելի բնական է նրան նկատել թշնամի, որովհետև նա չի կարող արտայայտել իր (գուցէ բարեկամական) դիտաւորութիւնները։ Հին աշխարհում իրար յաջորդող անվերջ պատերազմներից մի քանիսը մղուել են տարբեր արմատների պատկանող ազգերի միջև. մի քանիսն էլ եղել են աւազակային պատերազմներ տոհմերի միջև, այլև նուաճողական պատերազմներ՝ լաւագոյնս կազմակերպուած քաղաքների կամ թագաւորութեանց միջև։ Առաջին դասակարգին պատկանում են եգիպտացի թագաւորների Թոթմէսի և Ռամսէսի աշխարհակալական արշաւանքները. նոյն բնոյթը կրում էին Ասորեստանի և Բաբելոնի իշխողների կատարած արշաւանքները, ինչպէս նաև Պարսկաստանի Աքեմենեան թագաւորների արշաւագնդերը Եգիպտոսի, սկիւթացիների և յոյների դէմ։*

*Սակայն այդ թելադրուած չէին ցեղային զգացմունքներից, այլ պարզապէս նուաճողական ճիգեր էին։*

*Սկզբնական այդ դարերի միջոցով մենք գտնում ենք երեք ժողովուրդ, որոնք թւում է թէ ունեցած լինէին մի կերպ ցեղային գիտակցութիւն։ Սրանցից առաջինները էին փիւնիկեցիները։ Երբ պարսիկ թագաւորները կոչ կարդացին իրենց հարկատու Տիւրոսի և Սիդոնի փիւնիկեցիներին՝ պատրաստելու նաւային զօրագնդեր իրենց արշաւանքների համար, վերջիններս, որ յօժար էին կռուելու իրենց ծովային հակառակորդ յոյների դէմ, պայման դրին, որ իրենք չպիտի կռուէին Կարթագինէի իրենց ցեղակիցների դէմ, որոնց հետ պահպանել էին բարեկամական յարաբերութիւններ։*

*Երկրորդը՝ յոյներն էին, որոնք գիտակցելով իրենց մտաւորական գերազանցութիւնը, արհամարհում էին բոլոր դրացիներին, անգամ իտալացիներին, որոնց վերապահուել էր վերջը յաղթել նրանց։ Բացի այդ յոյները ունէին մի տեսակ համահելլէնական զգացում, որ նրանց միացրեց նախ Դարեհի, ապա Քսերքսէսի դէմ, և երբեմն էլ յորդորում էր նրանց մի քաղաքի՝ օգնութիւն ուղարկել Պարսից ճնշման տակ գտնուած մի ուրիշ յոյն քաղաքի. բայց նրանք յաճախ և նոյնչափ կատաղութեամբ էլ կռւում էին միմեանց դէմ։ Թեբէն և Պլատէան իրար ատում էին այնչափ սրտանց, որչափ մի յոյն ատում էր մի բարբարոսի։ Սակայն նրանք ընդունակ էին և հիանալու մի բարբարոսի ձիրքերի վրայ։ Երբ Քսենէֆոնը գրում է մի տեսակ բարոյագիտական-պատմական վիպագրութիւն (ռոման), իբրև հերոս վերցնում է Պարսիկ աշխարհակալ Կիւրոսին։*

*Թարգ. Ա. Սաֆրաստեան*

*(Շարունակելի)*

---

## *Ս Ե Պ Ա Գ Ի Ր*

*Դալիբաբա Բասեն, 4 հոկտ.*

*Տաճկական Բասենի գիւղերը շրջագայելիս Էշակ-Էյլագից հիւսիս-արևմուտ, Դալիբաբայից հարաւ մօտ 12 վերստ հեռաւորութեան վրայ Թագլի-դաղ գիւղի մօտ պատահեցի մի բեւեռագիր արձանագրութեան, մի սաժէն երկարութեամբ,* 3 1/2 *արշին լայնութեամբ։ Բևեռագրերը շատ պարզ են, կարծես նոր գրուած, միայն մի քանի տեղ անցեալ ամառուան ճակատամարտին գնդակներից եղծուած են։*

*(«Հորիզոն»)* *Արշակ Ատովմեան*

---

## *ԱՆԹԵԼ ՀԵՌԱԽՕՍ*

*Վերջին հինգ տարին անթել հեռախօսի փորձեր էին միայն կատարւում, իսկ այժմ արդէն սկսում է մրցել սովորական հեռախօսի հետ։ Անթել հեռախօսի բարձր բարգաւաճման ապացոյց է հանդիսանում նոր փոքրիկ անթել հեռախօսը, որ յարմարեցրած է սիրողների և շոգեմակոյկների տէրերի համար և մինչև 8 վերստ գործում է։ Այդ գործիքը այնքան հասարակ է, որ ամեն ոք կարող է գործածել։*

# ՀԱՅ ԹԱՏՐՈՆ

## «ՆԱՄՈՒՍ»

Հոկտ. 13-ին Հայ Դրամատիկ դերասանական ընկերութիւնը ներկայացրեց Շիրվանզադէի «Նամուսը»։

Բաղխուդարի նկարագիրը՝ որպէս վաղեմի սովորոյթների հասարակական հասկացողութեան զօրաւոր և անտեղիտալի ներկայացուցչի, այդ օր գեղեցիկ կերպով երևան բերուեցին։ Աբէլեանը յաջող կերպով հանդէս բերեց Բաղխուդարի տիպը։

Նրա արտայայտութեան ձևերը, Նամուսի համար նրա կազմած գաղափարը լաւ կերպով պատկերացաւ մեր առջև։ Յաջող էր նաև Զարիֆեանը՝ Ռուստամի դերում։

Սէյրանի դերում պ. Ալիխանեանը այն յաջողութիւնը ցոյց չը տուեց, ինչ որ տալիս է նա ուրիշ համապատասխան դերերում։ Երբ որ նա արդէն մեծցած, ներս մտաւ Բաղխուդարի տունը, Սուսանին տեսնելու և երկար ժամանակից իվեր շղթայուած սիրոյ յագուրդը առնելու համար, Սէյրանը պէտք էր ցոյց տար յուզուած և սիրատանջ պատանու հոգեբանութիւն, մինչդեռ դրա հակառակ Ալիխանեանի երևան բերած Սէյրանը այդ րոպէին քիչ չոր էր։ Մինչդեռ Սուսանի դերում օր. Ժասմէնը այդ րոպէին աւելի յաջող և յուզումնալից ներկայացրեց իր տիպը և այդպէս էլ յաջող տարաւ մինչև վերջ։ Պէտք է յիշատակել, որ Ալիխանեանը վերջին տեսարաններում հետզհետէ լաւացաւ և իր դերը մտաւ։ Հայրապետի դերում Վրոյրը բաւարար էր։ Պէտք է ձայնի և շարժուածքի աւելի խոնարհ արտայայտութիւններ։ Մարիամի դերում տ. Մայսուրեանը բաւարար կերպով տարաւ իր դերը։ Ծրպանիկի դերում տ. Ազնիւը յաջող էր և հարազատութեամբ ներկայացրեց արևելեան այդ միջնորդ խորամանկ կնոջ պատկերը։

Նամուսը ընդհանրապէս յաջող տպաւորութիւն թողեց հասարակութեան վրայ. կային տեսարաններ, որ յուզիչ էին և տիպիկ։

## ՕԹԷԼԼՕ

Հայ Դրամատիկ դերասանների «Գուրգէն» ընկերութիւը հոկտ. 19-ին Արտիստիկ թատրոնում ներկայացրեց Շէքսպիրի «Օթէլլօն»։

Խանդի ու վստահութեան այն զօրաւոր բնազդները, որոնք արտայայտւում ու զարգանում են Օթէլլոյի նկարագրով, հոգեկան այն յուզմունքները ու տառապանքները, որոնցով ապրում է նա Եագոյի թունաւորող խորամանկութեամբ, տաղանդաւոր կերպով այդ երեկոյ պ. Աբէլեանը կարողացաւ երևան բերել։

Պ. Աբէլեանի ներկայացրած Օթէլլօն մարմնացնում էր արևելեան ազդեցութիւնները՝ դիւրահաւանութիւն ու զգացումների յորդութիւն, որոնք ժառանգաբար մաւրի նկարագրում մարմնացել են և որոնց իշխանութիւնը խորտակել չի կարողացել Եւրոպական միջավայրը։ Արևելեան ու արևմտեան գծերի խառնուրդը եղող Օթէլլոյի տիպը է շատ յուզիչ ու յաջող կերպով պատկերացրեց Աբէլեանը, որի ֆիզիքական ու հոգեկան ներդաշնակ ցընցումները թողնում էին խոր և յուզումնալից տպաւորութիւն։

Յաջող ու գեղեցիկ էր խաղում նաև օր. Ժասմէն՝ Դեզդեմոնայի դերում։ Այդ երիտասարդ դերասանուհին ունի շնորհալի գծեր և արտայայտութիւններ. յոյզերի և զգացումների արտայայտութեան ժամանակ նա առհասարակ լաւ է պահում իրան։

Եագոն ամենաբարդ ու նուրբ հոգեբանական տիպերից մէկըն է, որ ստեղծագործել կարողացել է միայն Շէքսպիրի պէս հանճարը։ Պ. Յարութիւնեանը պիտի ասել որ նուազ յաջողութեամբ կարողացաւ ներկայացնել այն Եագոն, որ ճշտիւ ներդաշնակ էր Օթէլլոյին։ Ճիշտ է պ. Յարութեանն ունի առնական ձայն, շարժ ու ձևի նրբութիւն, բայց այդ բոլորի հետ եթէ միանար նաև ձայնի ու արտայայտութեան ձևերի փոփոխութիւնը, աւելի յաջող ու կատարեալ պիտի լինէր Եագոյի տիպը։

Բրաբանցիոյի դերում պ. Վրոյր, Կասիոյինում՝ պ. Ալիխանեան և Էմիլիայինում՝ տ. Մանուչարեան գովելի կերպով խաղացին։ Պ. Միրաղեանի ներկայացրած Վենետիկի դուքսը անյաջող էր. պարոնը լաւ չէր սովորած իր դերը։

Օթէլլոյի ներկայացումը անցաւ յաջող և տեղ տեղ նոյնիսկ շատ յուզիչ։ Միայն պէտք է ցաւել, որ թատրոնում պարապ աթոռներ շատ կային։

Լեման

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ

Մուշ շրջանի «Թիլ» գիւղի բնակիչ՝ Բարսեղ Մխիթարեանի որդին Մ. Բարսեղեանը, որ այժմ ողջ-առողջ գտնւում է Աթէնքում, մի նամակով խնդրում է Հ. Կ. Կոմիտէին, տեղեկութիւն տալ իր ընտանիքի և մերձաւորների վիճակի մասին։ Կոմիտէն այսու խնդրում է Մշեցի բոլոր այն հայրենակիցներին, որոնք ունէ տեղեկութիւն ունին յիշեալ Մ. Բարսեղեանի մերձաւորների մասին, փութան հաղորդել նրան, հետևեալ հասցէով. Monsieur M. Parseghian, chez Messieurs Stepan Iplisjian, passage Hegroponte Athènes (Gréce).



Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной ценз.